Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 21 ՆՈՅԵՄԲԵՐ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

### Նյութեր զրույցների համար



### Ագիտացիոն աշխատանքի փորձից



### Առաջավորների փորձից



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ԱՊԱՀՈՎԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՏԱՔ ԵՎ ԿՈՒՇՏ ՁՄԵՌՈՒՄԸ

Անասունների ձմեռման հաջող նախապատրաստումն ու անցկացումը անասնապահության զարգացման կարևոր էտապներից մեկն է։ Ահա թե ինչու գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողների ուշադրությունը ներկայումս կենտրոնացված է այդ խնդրի վրա, որովհետև անասունների ձմռան մսուրային շրջանի լավ կազմակերպումից է կախված հանրային հոտի հետագա գլխաքանակի աճն ու նրա մթերատվության բարձրացումը։ Ահա թե ինչու անասունների տաք և կուշտ ձմեռումը, եղած գլխաքանակի ու ծնված մատղաշի պահպանումը դառել է մեր կոլտնտեսությունների պատվի խնդիրը, նրանց սրբազան պարտականությունը երկրի հանդեպ։ Փորձը շարունակ ցույց է տալիս, որ ձմեռման շրջանից հաջողությամբ դուրս են գալիս այն կոլտնտեսությունները, որոնք ժամանակին կուտակել են անհրաժեշտ քանակությամբ կեր և ստեղծել են բոլոր ան-

հրաժեշտ պայմանները անասունների պահպանման ու գլխաքանակի աճման համար։

Ի՞նչ է նշանակում անասունների տաք և կուշտ ձմեռում։

Այդ առաջին հերթին նշանակում է, թե յուրաքանչյուր կոլտնտեսություն որքան կուշտ և հյութալի կերեր է կուտակել, ապահովվա՞ծ են արդյոք անասունները տաք, հարմարավետ և լուսավոր գոմերով, վերանորոգված և ախտահանված են եղած անասնապահական օբյեկտները, ինչպիսի՞ հոգատարություն է ցուցաբերվում կերի պահպանման և ռացիոնալ օգտագործման համար։

Այդ միաժամանակ նշանակում է ժամանակին կոմպլեկտավորվե՞լ են արդյոք անասնապահական բրիգադները բարեխիղճ ու բանիմաց կադրերով, ինչպե՞ս է կազմակերպվում անասունների կերակրման ու խնամքի գործը, ֆերմաներում ինչպիսի հիմքերի վրա է դրված զոոտեխնիկական սպասարկումը և, վերջապես, այդ նշանակում է թե ինչպես է կազմակերպված անասունների ծնի կամպանիայի հաջող ու անկորուստ անցկացումը, մատղաշի խնամքն ու պահպանումը և կովերի կաթնատվության բարձրացումը։

Անասնաբուծությունը, հացահատիկային տնտեսությունից հետո, գյուղատնտեսության



ամենակարևոր և վճռական ճյուղերից մեկն է։ Ահա թե ինչու պարտիան ու կառավարությունը այնքան մեծագույն ուշադրություն են դարձնում նրա առաջիկա զարգացման վրա։ Պարտիայի 20-րդ համագումարը դիրեկտիվներ տվեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյակի վերջում երկրում ստեղծել գյուղատնտեսական մթերքների լիակատար առատություն։ Պարտիան ու կառավարությունը հանրային անասնաբուծությունը զարգացնելու հարցում ելնում են հետևյալ անհրաժեշտությունից՝ մի կողմից ավելացնել կոլտնտեսությունների եկամուտները, բարձրացնել կոլտնտեսականների նյութական բարեկեցությունը, իսկ մյուս կողմից ապահովել երկրի բնակչությանը՝ մսով, կաթով և այլ կենսամթերքներով։

Մոսկվայի Լուժնիկիի կենտրոնական ստադիոնում շինարարների հանդիսավոր տոնի օրը արտասանած իր ճառում ընկ. Ն. Ս. Խրուշչևը առանձին գոհունակությամբ նշեց սոցիալիստական գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողների բարեխիղճ աշխատանքը անասնաբուծության զարգացման, բնակչությանը մսեղենով, կաթնեղենով և առանձնապես կաթով ապահովելու վերաբերյալ Կենտկոմի Հունվարյան պլենումի ու պարտիայի

20-րդ համագումարի որոշումների կենսագործման ուղղությամբ։ Այդ մասին է վկայում հետևյալ պերճախոս փաստը։ Եթե առ 20-ը հուլիսի 1953 թվականի բոլոր կատեգորիաների տնտեսությունների գծով մթերվել էր 5 միլիոն 918 հազար տոննա կաթ, ապա 1956 թվականի նույն ժամանակամիջոցում մթերվել է 9 միլիոն 320 հազար տոննա։ Եթե առ 20-ը հուլիսի 1953 թվականի մթերվել էր 976 հազար տոննա միս, ապա այս տարի նույն ժամանակամիջոցում արդեն մթերվել է 1 միլիոն 177 հազար տոննա միս։

Մեր երկրում վիթխարի հնարավորություններ կան անասնաբուծության և թռչնաբուծության զարգացման համար։ Վերջին մի քանի տարիների ընթացքում հսկայական աշխատանքներ են կատարվել այդ ուղղությամբ։ Պարտիան հոգ տարավ, որպեսզի սոցիալիստական անասնաբուծությունը ապահովվի կերի կայուն բազայով, ըստ որում ոչ միայն կոշտ և հյութալի, այլև խտացված հատիկային կերերով։ Անասնաբուծության կարիքները բավարարելու համար միայն 1955 թվականին մեր երկրում ցանվել է գրեթե 18 միլիոն հեկտար եգիպտացորեն, այսինքն 13,6 միլիոն հեկտարով ավելի, քան 1954 թվականին, կուտակվել է 17 միլիոն



տոննայով ավելի սիլոս և եգիպտացորենի ավելի քան 6 միլիոն տոննա կոնսերվացված կողր։

Անասնաբուծության զարգացումը մեր երկրում սերտորեն կապված է ժողովրդի կենսամակարդակի բարձրացման հետ, սննդամթերքների ասպարեզում նրա աճող պահանջմունքների բավարարման և մեր թեթև արդյունաբերությունը հումքով ապահովելու հետ։ Վերջին հանգամանքը իր հերթին նպաստավոր պայմաններ է ստեղծում ապահովելու բնակչության պահանջմունքները կոշկեղենի, հագուստեղենի և լայն սպառման այլ առարկաների նկատմամբ։

Այս տարի անասնաբուծության զարգացման բնագավառում լուրջ հաջողությունների են հասել նաև մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները։ Այդ նշանակում է, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները վճռական շրջադարձ են կատարել անասնաբուծության զարգացման ասպարեզում պարտիայի դիրեկտիվների կատարման ուղղությամբ, բարելավել են անասունների կերակրումն ու խնամքը, լուրջ ուշադրություն են դարձնում անհրաժեշտ կերի կուտակման և նրա տեսակների ընդարձակման վրա։ Որպես ակնառու օրինակ կարելի է բերել Սիսիանի

շրջանի Բալաք գյուղի կոլտնտեսության կովաբուծական ֆերման։ Կոլտնտեսությունը անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի, չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, կուտակել է երկու անգամ ավելի խոտ և պատրաստել է մեկ ու կես անգամ ավելի սիլոս։ Անցյալ տարվա 280 տոննա խոտի դիմաց այս տարի կուտակվել է 570 տոննա խոտ։ Ֆերմայի յուրաքանչյուր կովի համար պատրաստվել է մոտ 5 տոննա սիլոս և մոտ 1,5 տոննա խոտ։ Շնորհիվ անասունների կերակրման և խնամքի լավ կազմակերպման, անցյալ տարի այս ֆերմայում 100 կովից ստացվել է 97 հորթ, իսկ անասունների անկումը կազմել է ընդամենը 0,1 տոկոս։

Այդպես է փաստերի լեզուն։ Այն կոլտնտեսությունները, որոնք ամռան ընթացքում կուտակում են շատ և բազմազան կեր, հնարավորություն են ունենում ձմռան շրջանում անասունները պահել գեր և առողջ վիճակում, գարուն են դուրս գալիս գրեթե առանց կորուստների, հասնում են անասունների մթերատվության և գլխաքանակի բարձր աճի։

Անասունների ձմեռման ժամանակաշրջանում կոլտնտեսային ագիտատորների խնդիրն է՝ պարտիական կազմակերպությունների



ղեկավարությամբ ու օգնությամբ քաղաքական, մասսայական և դաստիարակչական լայն աշխատանք կազմակերպել անասնապահական ֆերմաների աշխատողների շրջանում, մոբիլիզացնել նրանց ուժերն ու եռանդը և հասնել անասնաբուծության զարգացման նոր ու բարձր ցուցանիշների։

Ծավալելով գործարար սոցիալիստական մրցությունը անասնապահների շրջանում, ագիտատորները պետք է նրանց հիշողության մեջ միշտ վառ պահեն Վորոնեժի մարզի գյուղատնտեսական աշխատողների բարձր հայրենասիրական նախաձեռնությունը, որոնք պարտավորվել են մսի և կաթի արտադրության պլանը կատարել հնգամյակի Դիրեկտիվներով նախատեսված ժամկետից շուտ, այսինքն՝ մսի արտադրությունը կրկնապատկել ոչ թե հինգ տարում, այլ մեկ տարում, իսկ կաթի արտադրությունը կրկնապատկել մեկ ու կես տարում։

Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները երբեք չպետք է մոռանան, որ իրենք սոցմրցման մեջ են մտել եղբայրական Կիրգիզիայի աշխատավորության հետ և պայքարեն մրցությունից հաղթանակով դուրս գալու համար։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Վ. ԿՈՐՏԻՊԻՆ

*Խաղաղ գոյակցության սովետական քաղաքականությունը ժամանակավոր երևույթ չէ, ինչպես ջանում են ներկայացնել Արևմուտքի իմպերիալիստները։ Այդ քաղաքականությունը Սովետական պետությունը սկսել է անցկացնել իր գոյության առաջին իսկ օրերից։ Տարբեր սոցիալական կարգ ունեցող երկրների խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականությունը՝ դա քաղաքական կուրս է, որ նախատեսված է կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ամբողջ էպոխայի համար։*

*Տարբեր սոցիալական սիստեմներ ունեցող երկրները պետք է ոչ միայն պարզապես գոյակցեն իրար հետ կողք-կողքի, այլև պետք է իրար հետ առաջ ընթանան դեպի միմյանց միջև հարաբերությունների բարելավում, փոխադարձ վստահության ամրապնդում, բարեկամական համագործակցու-*



*թյուն, դեպի խաղաղ տնտեսական և կուլտուրական մրցություն։ Դրա համար լավագույն հիմք են հանդիսանում արդի պայմաններում միջազգային հարաբերությունների հայտնի հինգ սկզբունքները, որոնք արդեն ճանաչվել են շատ պետությունների և լայն հասարակայնության կողմից։*

*Իր արտաքին քաղաքականության մեջ Սովետական Միությունը ձգտում է ամենից առաջ երեք կարևորագույն խնդիրների լուծմանը՝ Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության ապահովմանը, Ասիայի կոլեկտիվ անվտանգության ապահովմանը, զինաթափմանը և ատոմային ու ջրածնային ռումբերի արգելմանը։ Այն բանից հետո, երբ Սովետական Միության և մյուս խաղաղասեր պետությունների ջանքերի շնորհիվ վերջին տարիներում ձեռք է բերվել միջազգային լարվածության որոշակի թուլացում, է՛լ ավելի ակտուալ նշանակություն է ստացել զինաթափման, ինչպես նաև ատոմային ու ջրածնային զենքի արգելման պրոբլեմը։*

*Սովետական Միությունը անդուլ կերպով շարունակում է վճռական պայքար մղել զինաթափման և ատոմային ու ջրածնային զենքի արգելման համար։ Սովետական կառավարությունը համառորեն և համբերա-*

տար կերպով ելք է փնտրում փակուղուց, որի մեջ են մտցրել այդ պրոբլեմները ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի ու Ֆրանսիայի կառավարությունները, որոնք սիստեմատիկորեն ձախողում են համապատասխան միջազգային համաձայնագրերի կնքումը, ընդորում կանգ չառնելով նույնիսկ իրենց սեփական առաջարկություններից հրաժարվելու առջև, երբ միայն դրանք ընդունում է Սովետական Միությունը։

Ջցանկանալով դադարեցնել սպառազինությունների մրցավազքը, քանի որ դա զենքի արտադրությամբ զբաղվող կապիտալիստական մոնոպոլիաներին վիթխարի շահույթներ է բերում, առանձնապես ԱՄՆ-ը, զինաթափման վերաբերյալ համաձայնությունը կախման մեջ է դնում մի շարք չկարգավորված միջազգային պրոբլեմների նախնական լուծումից։ Բայց, երբ բարձրանում է այդ պրոբլեմների վերաբերյալ համաձայնագիր կնքելու հարցը, արևմտյան տերությունները զանազան առիթներով փաստորեն հրաժարվում են համաձայնեցված որոշումներ ընդունելուց։

Այսպես, օրինակ, արևմտյան տերությունները, առանձնապես ԱՄՆ-ը, զինաթափման հարցի լուծումը կախման մեջ են



դնում գերմանական պրոբլեմի լուծումից։ Սակայն հենց նրանք են ձախողում Գերմանիայի վերամիավորումը դեմոկրատական և խաղաղասիրական սկզբունքներով։ Նրանք են խրախուսում գերմանական միլիտարիզմի և ֆաշիզմի վերածնունդը Արևմտյան Գերմանիայում, արգելակում են գոյություն ունեցող գերմանական երկու պետությունների՝ Գերմանիայի Ֆեդերատիվ ռեսպուբլիկայի և Գերմանական Դեմոկրատական ռեսպուբլիկայի մերձեցմանը և համագործակցությանը։

Սովետական Միությունը գործնականում ցույց տվեց, թե ինչպես պետք է լուծել զինաթափման հարցը և ինքը, իր նախաձեռնությամբ, կրճատեց ՍՍՌՄ Զինված ուժերի թիվը 1 միլիոն 200 հազար մարդով, իսկ զինված ուժերի արդեն անցյալ տարի կատարած կրճատման հետ միասին՝ 1 միլիոն 840 հազար մարդով։ Սովետական կառավարությունը մյուս երկրների կառավարություններին կոչ արեց իրականացնել զինված ուժերի կրճատման նույնպիսի միջոցառումներ։ ՍՍՌՄ-ի օրինակին հետևեցին ժողովրդական դեմոկրատիայի երկրները։ Սակայն արևմտյան տերությունները շարունակում են սպառազինությունների մրցավազքը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ սեսիան, որը տեղի ունեցավ 1956 թվականի հուլիսին, զինաթափման մասին ընդունեց մի դիմում ուղղված աշխարհի բոլոր երկրների պառլամենտներին։ Գերագույն Սովետը բոլոր պառլամենտներին կոչ արեց պաշտպանել ՍՍՌՄ-ի խաղաղ նախաձեռնությունը և իր հերթին գործուն միջոցներ ձեռնարկել սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու, զինված ուժերը և սպառազինությունները կրճատելու ուղղությամբ։

Վերջին տարին եղավ մյուս երկրների կառավարությունների ղեկավարների հետ Սովետական կառավարության ղեկավարների բեղմնավոր բանակցությունների, այցելությունների և նշանավոր հանդիպումների տարի։

1955 թվականի նոյեմբեր-դեկտեմբերին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինը և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Անդամ Ն. Ս. Խրուշչևը բարեկամական այցով մեկնեցին Հնդկաստան, Բիրմա, Աֆղանստան։ 1956 թվականի գարնանը Ասիայի երկրներում՝ Աֆղանստանում, Պակիստանում, Հնդկաստանում, Բիրմայում, Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում, Չինական Ժողո-



վրդական Ռեսպուբլիկայում, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում եղավ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի Առաջին տեղակալ Ա. Ի. Միկոյանը։ 1956 թվականի ամռանը Արաբական Արևելքի երկրներ՝ Եգիպտոս, Սիրիա և Լիբանան այցելեց ՍՍՌՄ Արտաքին Գործերի մինիստր Դ. Տ. Շեպիլովը։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրավերով 1956 թվականի օգոստոս-սեպտեմբեր ամիսներին Սովետական Միությունում եղավ Ինդոնեզիայի Ռեսպուբլիկայի պրեզիդենտ Սուկառնոն։ 1956 թվականի ամռանը Մոսկվայում հաջողությամբ անցկացվեցին բանակցություններ Սովետական կառավարության և Եմենի, Կամբոջայի և Ցեյլոնի կառավարական դելեգացիաների միջև։ Այդ բոլոր բարեկամական այցելությունները և բանակցությունները հանդիսացան նոր արժեքավոր ավանդ Սովետական Միության ժողովուրդների և գաղութարարների լուծը թոթափած խաղաղության ու իր ազգային անկախության համար անխոնջ կերպով պայքարող Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդների բարեկամության ու համագործակցության գործում։ ՍՍՌՄ-ը այդ երկրներին մեծ աջակցություն է ցույց տալիս ազգային անկա-

խության ամրապնդման համար նրանց մղած պայքարում, տնտեսական և կուլտուրական մեծ օգնություն է կազմակերպում, ընդ որում չներկայացնելով ոչ մի պայման, որը կարող էր խախտել այդ երկրների սուվերենիտետը։

Երբ բորբոքվեց Սուեզի ջրանցքի ընկերության ազգայնացման կապակցությամբ կոնֆլիկտը, Սովետական կառավարությունը կոչ արեց Սուեզի հարցը լուծել խաղաղ ճանապարհով։

Սակայն Եգիպտոսի նկատմամբ Անգլիայի Ֆրանսիայի և Իսրայելի կառավարությունները վերջերս ագրեսիա կատարեցին։ Եգիպտոսի դեմ ուղղված զինված ագրեսիայի մասին Սովետական կառավարության հայտարարության մեջ ասված է՝ «Սովետական Միության կառավարությունը վճռականորեն դատապարտում է Եգիպտոսի նկատմամբ Անգլիայի, Ֆրանսիայի և Իսրայելի կառավարությունների ագրեսիվ գործողությունները։ Աշխարհի ազատասեր ժողովուրդները ջերմ համակրանքով են վերաբերվում Եգիպտական ժողովրդի արդարացի պայքարին, որը պաշտպանում է իր ազգային անկախությունը։

Սովետական կառավարությունը գտնում



է, որ Միավորված Ազգերի կազմակերպության Անվտանգության Խորհուրդը, հանուն Մերձավոր ու Միջին Արևելքի շրջանում խաղաղության և անդորրի պահպանման, անհապաղ պետք է միջոցներ ձեռնարկի Եգիպտոսի նկատմամբ Անգլիայի, Ֆրանսիայի ու Իսրայելի ինտերվենցիան դադարեցնելու և ինտերվենտների զորքերը Եգիպտոսի տերիտորիայից անհապաղ դուրս բերելու համար»։

Ելնելով խաղաղության և անվտանգության շահերից, Սովետական Միությունը հոգ է տանում իր հարավային հարևանների՝ Իրանի, Թյուրքիայի և Պակիստանի հետ հարաբերությունների նորմալացման մասին, ձգտելով այն բանին, որպեսզի այդ երկրների տերիտորիաները ոչ մի ժամանակ և ոչ մեկի կողմից չօգտագործվեն Սովետական Միության սահմաններին սպառնալիք ստեղծելու համար։ 1956 թվականի ամռանը Սովետական Միություն այցելեց Իրանի շահնշահ Մուհամմեդ Ռզա Փեհլևին, իրանական պետական գործիչների ուղեկցությամբ։ Այդ այցը նպաստեց Սովետական Միության և Իրանի բարի դրացիական հարաբերությունների ամրապնդմանը։

1955 թվականի նոյեմբերին Սովետական

կառավարության հրավերով ՍՍՌՄ եկավ նորվեգական կառավարական դելեգացիան, իսկ 1956 թվականի մարտ-ապրիլին դանիական և շվեդական դելեգացիաները՝ այդ երկրների պրեմյեր-մինիստրների գլխավորությամբ։ Այդ այցերի ժամանակ Մոսկվայում կայացած բանակցությունները նպաստեցին բարեկամության ամրապնդմանը և համագործակցության զարգացմանը սովետական ժողովրդի և սկանդինավյան երկրների ժողովուրդների միջև։ Սովետա-ֆիննական բարեկամության հետագա ամրապնդման համար կարևոր նշանակություն ունեցավ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ Կ. Ե. Վորոշիլովի վերջերս կատարած այցը Ֆինլանդիա։

Սովետական կառավարությունը անկեղծորեն ձգտում է արմատապես բարելավել սովետա-ամերիկյան հարաբերությունները, որը մեծ դեր կարող էր խաղալ կայուն խաղաղության պահպանման գործում։ Սովետական կառավարությունը ԱՄՆ-ի կառավարությանն առաջարկեց կնքել բարեկամության և համագործակցության պայմանագիր։ Սակայն, դատելով ըստ ամենայնի, ԱՄՆ-ի կառավարության վրա ազդեցություն են գործում այն ուժերը, որոնք չեն ցանկա-



նում այդպիսի պայմանագրի կնքումը։ Նրանք առաջվա պես շարունակում են իրենց հաշիվները կառուցել «ուժի դիրքերից» ելնող տխրահռչակ քաղաքականության վրա, թեև այդ քաղաքականությունն արդեն վաղուց է սնանկացել։

1956 թվականի ապրիլին կայացավ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Անդամ Ն. Ս. Խրուշչևի ուղևորությունը Անգլիա, որը ձեռնարկվեց անգլիական կառավարության և անձամբ Ա. Իդենի հրավերով։ Այդ ուղևորությունը և սովետա-անգլիական բանակցությունները Լոնդոնում ՍՍՌՄ և Անգլիայի հարաբերությունների միջև նոր էտապի սկիզբ հանդիսացան և նպաստեցին միջազգային լարվածության հետագա թուլացմանը։ Ֆրանս-սովետական հարաբերությունների բարելավման, երկու երկրների ժողովուրդների միջև տրադիցիոն բարեկամության զարգացման և միջազգային խաղաղության գործի համար մեծ նշանակություն ունեցավ 1956 թվականի մայիսին Ֆրանսիայի Մինիստրների Խորհրդի Նախագահ Գի Մոլլեի և արտաքին գործերի մի-







նիստը Քրիստիան Պինոյի այցելությունը Սովետական Միություն։

Սովետական Միության արտաքին քաղաքականությունը ուղղված է դեպի աշխարհի բոլոր խաղաղասիրական ուժերի հզոր պատվարի՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմի ամեն կերպ ամրապնդմանը։ Սովետական Միությունը անշեղորեն ծավալում է եղբայրական բարեկամությունը, քաղաքական, տնտեսական և կուլտուրական սերտ համագործակցությունը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ու սոցիալիստական բոլոր երկրների հետ և նրանց հետ միասին պայքարում է խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար։ ՍՍՌՄ հաստատակամորեն ձգտում է հասնել Միավորված Ազգերի կազմակերպությունում ՉԺՌ-ի օրինական իրավունքների վերականգնմանը և Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան ՄԱԿ-ի անդամ ընդունելուն։ Լրիվ իրավահավասարության և սոցիալիստական փոխօգնության հիման վրա Սովետական Միությունը մյուս սոցիալիստական պետություններին սիստեմատիկորեն ցույց է տալիս տնտեսական և գիտա-տեխնիկական մեծ օգնություն։



1956 թվականի հունիսին մեր երկիր այցելեց Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկայի պրեզիդենտ Իոսիպ Բրոզ Տիտոն Հարավսլավիայի ականավոր պետական և պարտիական գործիչների ուղեկցությամբ։ Մոսկվայում անցկացված սովետա-հարավսլավական բանակցությունների հետևանքով է՛լ ավելի ամրապնդվեց սովետական և հարավսլավական ժողովուրդների տրադիցիոն եղբայրական բարեկամությունը, միջոցառումներ նշվեցին երկու երկրների քաղաքական, տնտեսական և կուլտուրական համագործակցության զարգացման վերաբերյալ։

1956 թվականի հուլիսին Սովետական Միությունում եղավ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարական դելեգացիան՝ պրեմյեր-մինիստր Օտտո Գրոտեվոլի գլխավորությամբ։

Մոսկվայում կայացած բանակցությունները ցույց տվեցին Սովետական կառավարության և ԳԴՌ-ի կառավարության հայացքների լրիվ միասնությունը միջազգային հարցերի և Գերմանիայի՝ որպես ազատ, դեմոկրատական, խաղաղասեր պետության, վերամիավորման ուղիների հարցի նկատմամբ։ Բանակցությունների ժամանակ նըշ-

ված տնտեսական բնույթի միջոցառումները ԳԴՌ-ին կտան լրացուցիչ մեծ ռեսուրսներ սոցիալիզմի ուղիով նրա ժողովրդական տնտեսության զարգացման համար։

ՍՍՌՄ և Կորեական Ժողովրդա-դեմոկրատական Ռեսպուբլիկայի միջև բարեկամության և համագործակցության հետագա զարգացումը իր արտահայտությունը գտավ 1956 թվականի ամռանը կորեական կառավարական դելեգացիայի՝ ՍՍՌՄ կատարած այցելության մեջ, որին գլխավորում էր ԿԺԴՌ մինիստրների կաբինետի նախագահ Կիմ Իր Սենը։

Սովետական Միության խաղաղասեր արտաքին քաղաքականության անբաժանելի մասն է հանդիսանում մյուս երկրների հետ առևտրի և կուլտուրայի, գիտության ու արվեստի բնագավառում կոնտակտների զարգացումը։

Միջազգային կյանքում խոշոր իրադարձություն էր Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների բարեկամության և համագործակցության զարգացման ու հետագա ամրապնդման հիմունքների մասին ՍՍՌ Միության կառավարության Դեկլարացիան։



Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության արտաքին հարաբերությունների անսասան հիմքը — ասված է Դեկլարացիայում,— եղել է և մնում է բոլոր պետությունների խաղաղ գոյակցության, բարեկամության և համագործակցության քաղաքականությունը։

Այդ քաղաքականությունը առավել խոր ու հետևողական արտահայտություն է գտնում սոցիալիստական երկրների փոխհարաբերություններում։ Սոցիալիստական պետությունները իրենց փոխհարաբերությունները կարող են կառուցել լիակատար իրավահավասարության, տերիտորիալ ամբողջականության, պետական անկախության ու սուվերենության հարգելու, միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքներով։

---

# ԵՐԵՎԱՆԻ ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆԸ

Լ. ԹՈՎՄԱՍՅԱՆ
Ինժեներ

Վեցերորդ հնգամյակը կլինի ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում նոր տեխնիկայի լայն արմատավորման հնգամյակ։

Հնգամյակի ընթացքում ռադիոկայանների թիվը կավելանա մոտ 90 տոկոսով և կարմատավորվի ուլտրակարճալիքային բարձրորակ ռադիոհաղորդում, որը հնարավորություն կտա սովորական ռադիոհաղորդման ծրագիրը ընդունել ժամանակակից հեռուստատեսներով։ Վեցերորդ հնգամյակում բացառիկ մեծ աշխատանք է կատարվելու հեռուստատեսական հաղորդումների զարգացման բնագավառում։

Հինգ տարվա ընթացքում մեր երկրում պետք է կառուցվի և գործողության մեջ մտնի առնվազը 63 նոր հեռուստատեսական կայան։ Այժմ արդեն գործում են այդպիսի 12 կայան։

Բոլոր միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքները կունենան իրենց հեռուստատեսական կենտրոնները։ Որպեսզի ընդլայնվեն հեռուստատեսական հաղորդումների գոտիները, հեռուստատեսական կենտրոնների շրջակայքում կտեղծվի փոքր հզորություն ունեցող ավտոմատ ռետրանսլյացիոն (վերատրանսլյացիոն) կայանների ցանց։



Նոր կառուցվող հեռուստատեսական կենտրոնների թվին է պատկանում Երևանի հեռուստատեսական կենտրոնը, որը շարք կմտնի այս տարի։ Այն կառուցվում է Երևան քաղաքի Նորքի բարձունքի վրա։ Մոտ օրերս կավարտվի հեռուստատեսական մետաղյա աշտարակի շինարարությունը, որի բարձրությունը 180 մետր է, իսկ քաշը՝ 240 տոննա։

Աշտարակի վրա դրվում է հատուկ հեռուստատեսական հաղորդիչ անտենա՝ 16 մետր բարձրությամբ և 3 տոննա քաշով։

Անտենան Արարատյան հարթավայրի մակերեսի հաշվով կլինի ավելի քան 500 մետր բարձրության վրա, որը հնարավոր կդարձնի հեռուստատեսական կայանի հաղորդումները ընդունել Հոկտեմբերյանում, Արտաշատում, Աշտարակում, Կոտայքում և նույնիսկ այնպիսի շրջաններում, որոնք գտնվում են ուղիղ տեսողության սահմաններից դուրս։

Ի՞նչ է իրենից ներկայացնում հեռուստատեսական կենտրոնը։

Այստեղ գտնվում է հեռուստատեսական փոքր ստուդիան, որտեղ կարող են կազմակերպվել փոքրիկ ներկայացումներ, կվարտետների, մենակատարների, դասախոսների ելույթներ։ Ստուդիան ունի հատուկ լուսավորում և ակուստիկ մեկուսացում։ Արտիստների աշխատանքը տեսանելի է այսպես կոչված ստուդիական ապարատային սենյակի հատուկ լուսամուտից։ Ստուդիայում է գտնվում հեռուստատեսական հաղորդիչ խցիկը, որը օպտիկական բարդ հարմարանքների և ռադիոուժեղացուցիչի միջոցով պատկերը փոխակերպում է բարդ ձևի էլեկտրական հոսանքի, որը լարերի միջոցով հաղորդվում է ստուդիական ապարատային սենյակի հսկիչ հարմարանքներին։ Այստեղ պատկերները երևվում են արդեն ընդունիչ խողովակների էկրանների վրա։

Հարևան սենյակում տեղավորված է կինո-ապարատուրան հաղորդիչ խողովակի հետ միասին, որի վրա ուրվագծվում է կինոնկարի պատկերը։ Հաղորդիչ խցիկը այս պատկերը վերափոխում է բարդ ձևի էլեկտրական հոսանքի, որը տրվում է



ստուդիական ապարատային սենյակի երկրորդ հսկիչ հարմարանքին, որի վրա ուրվագծվում է պատկերը։ Երրորդ հսկիչ հարմարանքի էկրանի վրա ազդանշան է տրվում ընդունիչ ապարատային սենյակից։

Ընդունիչ ապարատային սենյակում այնպիսի սարքավորումներ են տեղավորված, որոնք հնարավորություն են ստեղծում ընդունել հատուկ ավտոբուսների վրա գտնվող շրջիկ հեռուստատեսական կայաններից եկող հեռուստատեսական ազդանշանները։

Այդ ավտոբուսները շրջում են ստադիոններում, թատրոններում, ձեռնարկություններում և կատարում են արտաստուդիական հաղորդումներ։ Այս ազդանշանների ընդունման համար հեռուստատեսական աշտարակի վրա կան ընդունիչ անտենաներ, որոնք կարող են պտտվել ցանկացած ուղղությամբ և ընդունել միայն շրջիկ կայանի հաղորդումները։

Պատկերումը առաջանում է ընդունիչ ապարատային սենյակի էկրանի վրա, ինչպես նաև ստուդիայի հսկիչ էկրանում։

Ռեժիսյորը նստելով ստուդիական ապարատային սենյակում, ղեկավարում է հաղորդման ծրագիրը, և ցուցումներ տալիս

ստուդիային՝ հաղորդումների ժամանակ։ Չորրորդ էկրանի վրա տեսանելի է այն պատկերը, որը ընտրված է տվյալ ժամանակ եթեր հաղորդելու համար։

Հեռուստատեսային հաղորդիչը ձայնաուղեկցման հաղորդիչի հետ միասին տեղավորված է հատուկ շենքում։ Այստեղ դրված է հատուկ սարքավորում ունեցող ապարատուրա, որը դիստանցիոն կերպով ղեկավարվում է հերթապահ անձնակազմի կողմից։

Ամբողջ տեխնիկան պահանջում է բարձր որակավորում ունեցող տեխնիկական անձնակազմ։ Աշխատակիցներից յուրաքանչյուրը ունի հատուկ ֆունկցիա, որն ապահովում է ամբողջ հեռուստատեսային կենտրոնի հաղորդումների բարձր որակը։

Սկզբնական շրջանում հեռուստատեսային կայանը աշխատելու է շաբաթական 2—3 անգամ, 3—4 ժամ տևողությամբ, երեկոյան ժամերին։

Ընթացիկ տարում սպասվում է 53 սանտիմետր անկյունագծով նոր հեռուստատեսների վաճառք, այդ թվում «Ալմազ», «Տապազ», «Նևա», «Միր» և այլն։

Ավելանալու է հեռուստատեսների զգայունակությունը։ Թողարկվելու են ռադիոընդունիչներով կոմբինացված հեռուստա-



տեսներ։ Օրինակ, «Ռադիոկոմբայն» («Ուկրաինայի» տիպի) հեռուստատեսը ունի նաև ռադիոընդունիչ բոլոր ալիքների համար, մագնիտաֆոն և ձայնասկավառակ նվագելու հարմարանք։

Այժմ ավելի շատ են կիրառվում հեռվից հաղորդումներ ընդունելու անտեննաներ, որոնք հնարավորություն են տալիս հաղորդումներ ընդունել ուղիղ տեսողության սահմաններից դուրս։

Հայաստանի լեռնային ռելյեֆի պայմաններում հնարավոր են շատ պատահականություններ, որոնք կուսումնասիրվեն։

Մոտ ժամանակներս ռեսպուբլիկայի մի շարք բարձունքներում կդրվեն ռետրանսլյացիոն կետեր, որոնք է՛լ ավելի կմեծացնեն հեռուստատեսային հաղորդումների շրջանակները։

Մոտ է նաև այն օրը, երբ տեղի կունենա հարևան հեռուստատեսային կայանների հետ հաղորդումների փոխանակում։

Հնգամյակի վերջին մենք հնարավորություն կունենանք ռադիոռելեային գծերի միջոցով ընդունել Մոսկվայի, Խարկովի, Կիևի և այլ քաղաքների հաղորդումները։

---

# ՑՈՒՑԱԴՐԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ

Զ. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Երևանի ավտոդողերի գործարանի
ագիտատոր

Մեր գործարանի ագիտատորները սիստեմատիկաբար զրույցներ են ունենում բանվորների հետ՝ նրանց հետաքրքրող հարցերի վերաբերյալ։ Ագիտատորները գործարանի կոլեկտիվին ծանոթացնում են ՍՍՌՄ ներքին և արտաքին դրության առանձին հարցերին, պատմում գործարանի առջև կանգնած խընդիրների ու դրանց կենսագործման մասին, տարածում արտադրության առաջավորների ու նորարարների աշխատանքի փորձը։

Բանավոր ագիտացիայի կազմակերպման հետ մեկտեղ, գործարանի պարտիական կազմակերպությունը լուրջ ուշադրություն է դարձնում ցուցադրական ագիտացիայի կազմակերպմանը։ Փորձը ցույց է տալիս, որ լավ կազմակերպված ցուցադրական ագիտացիան զգալիորեն նպաստում է արտադրության բարելավմանը։ Ի՞նչ է ցուցադրվում մեզ մոտ և ինչպե՞ս է ցուցադրվում։



Ամեն մի անծանոթ մարդ, որը առաջին անգամ ոտք է դնում մեր գործարանի բակը, անպայման ուշադրություն է դարձնում գըլխավոր կորպուսի մուտքի աջ և ձախ կողմերում գտնվող երկու ցուցատախտակների վրա։ Ձախ կողմի տախտակը ծանոթացնում է սոցիալիստական մրցության ընթացքին, նա հենց այդպիսի անուն էլ կրում է՝ «Սոցմրցության ցուցանիշներ»։ Այնտեղ, առանձին սյունակներում, նշվում են օրվա և ամսվա արտադրական ցուցանիշները՝ ըստ ցեխերի և հերթափոխությունների։

Ամեն հերթափոխությունից հետո բանվորները հավաքվում են այդ տախտակի առջև և ծանոթանում իրենց աշխատանքի արդյունքներին, վիճում այն մասին, թե որ հերթափոխն է առաջնությունը նվաճելու։ Այդ տախտակը մեծ դեր է խաղում մրցությունը բանվորների մեջ ծավալելու և արտադրական ընդհանուր վերելք ստեղծելու գործում։

«Սոցմրցության ցուցանիշների» տախտակի հանդիպակաց կողմում գտնվում է «Պատվո տախտակը»։ Այս տախտակը արդեն ծանոթացնում է գործարանի առաջավոր մարդկանց հետ։ Այնտեղ փակցված են նրանց նկարները, ովքեր չեն բավարարվում

սովորական ցուցանիշներով, այլ միշտ ձեռք են բերում այնպիսի արդյունքներ, որոնք գերազանցում են նախատեսված նորմաները։ Օրինակ, այնտեղ փակցված են սոցմրցության առաջավորներ Վ. Արտենյանի, Ա. Մարկոսյանի, ավտոդող հավաքող Մ. Հակոբյանի և շատ ուրիշների նկարները։ Նրանցից յուրաքանչյուրը օրվա իր արտադրական պլանը կատարում է 110-ից մինչև 125 տոկոսով և տալիս է միայն գերազանց որակի արտադրանք։

Գլխավոր արտադրական կորպուս մտնելիս աչքի է ընկնում ամենազանազան պլակատների, կոչերի, դիագրամաների, պատի և ֆոտո թերթերի առատությունը։

Այդ կորպուսի կենտրոնական մասում, ուղիղ գլխավոր մուտքի դիմաց, փակցված է մի մեծ կտավ, որի վրա գրված են 1956 թվականի 4-րդ եռամսյակում գործարանի կոլեկտիվի՝ սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները։ Այդ կտավը գործարանի յուրաքանչյուր բանվորի մշտապես հիշեցնում է, որ գործարանը պետք է եռամսյակի վերջում թողարկվող արտադրանքը, 1955 թվականի համեմատությամբ, ավելացնի 50 տոկոսով, տարեկան արտադրական պլանը կատարի 1956 թվականի դեկտեմբե-



րի 24-ին, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնի 1,5 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքը իջեցնի 0,5 տոկոսով, յուրացնի նոր արտադրանքի թողարկումը և այլն։

Հետաքրքրական են կորպուսի պատերին և սարքավորումների ու մեքենաների հարմար տեղերում փակցված կոչերը։ Որպես կանոն, այդ կոչերը կոնկրետ բովանդակություն ունեն և բանվորին պարզ պատկերացում են տալիս նյութերի խնայողության կարևորության մասին։ Օրինակ, ավտոդողի ինքնարժեքի 45 տոկոսը կազմում է ռետինային խառնուրդը, իսկ 35 տոկոսը՝ կորդը։ Այստեղից պարզ է, թե ինչքան կարևոր է այդ երկու նյութերի խնայումը, քանի որ միայն նրանք կազմում են արտադրանքի ինքնարժեքի 80 տոկոսը։ Կորդի խնայողության նշանակությունը ավելի արտահայտիչ դարձնելու նպատակով ցեխում գրված և փակցված է մի կոչ այն մասին, թե «մեկ տոկոս կորդի տնտեսումով մենք կարող ենք յուրաքանչյուր շաբաթ խնայել բամբակի մեկ հեկտարից ստացվող բերքը»։ Նույն ձևով էլ գրված են կաուչուկի խնայողության մասին կոչերը. «Ընկերնե՛ր, խնայեցեք կաուչուկը, մեկ կիլոգրամ կաուչուկի արտադրության

համար պետությունը ծախսում է 9 կիլոգրամ հացահատիկ կամ 22 կիլոգրամ կարտոֆիլ», «Ընկեր,— ասված է մեկ ուրիշ լոզունգում,— վերցրու ոտքիդ տակ ընկած կաուչուկը, մեկ կիլոգրամ կաուչուկի պատրաստման համար ծախսված է 30 կիլոգրամ շաքարի ճակնդեղ»։

Մեծ է այս կոչերի մոբիլիզացնող ուժը, և այդ մեծությունը առաջին հերթին պայմանավորված է նրանով, որ նա կոնկրետ է, արտահայտիչ և հասկանալի է յուրաքանչյուր բանվորի համար։

Ո՞ր բանվորը չի պայքարի, օրինակ, խոտանի դեմ, եթե նրա համար պարզ լինի, որ յուրաքանչյուր 100 կիլոգրամ խոտան ռետին թողարկելու դեպքում պետությանը կհասցվի 500 կիլոգրամ հացահատիկի կամ 1200 կիլոգրամի կարտոֆիլի վնաս։ Եվ իրոք, այդ կոչը դրական նշանակություն ունեցավ արտադրանքի որակը բարելավելու գործում։ Պլանով նախատեսված է արտադրվող ավտոդողերի 93 տոկոսը տալ առաջին տեսակի, իսկ մնացած 7 տոկոսը կարելի է թողարկել և երկրորդ տեսակի։ Սակայն այժմ գործարանի արտադրանքի 98 տոկոսը, իսկ երբեմն էլ նույնիսկ 100 տոկոսը առաջին տեսակի է։



Այսպես է կազմակերպվում ցուցադրական ագիտացիան մեզ մոտ և այսպիսին են նրա արդյունքները։ Ինչ խոսք, որ մեր գործարանում ցուցադրական ագիտացիայի մասին խոսելիս, երբեք չի մոռացվում «Երևանի շիննիկ» անունը կրող պատի թերթը, որի համբավը դուրս է եկել գործարանի սահմաններից։ Այդ պատի թերթը իր օգնականի «գործարանային կոկորդիլոսի» հետ միասին հաջողությամբ մոբիլիզացնում է կոլեկտիվի ուժերը և այն ուղղում դեպի առաջադրանքների անշեղ կատարումը։

Ցուցադրական ագիտացիան կազմակերպելիս մենք հատուկ ուշադրություն ենք դարձնում առաջավոր փորձի տարածմանը։ Տեղական առաջավորների մասին պատկերացում է տալիս «Երևանի շիննիկ» պատի թերթը։ Բայց դրանով մենք չենք բավարարվում։ Մենք լայնորեն ցուցադրում ենք Միության նույնանման գործարանների առաջավորների աշխատանքի փորձը։ Այդ նպատակի համար մենք գլխավոր կորպուսում, աչքի ընկնող վայրում պատրաստել ենք մի ցուցափեղկ, որտեղ բանվորները միշտ հնարավորություն են ունենում կարդալու Մոսկվայի, Յարոսլավլի, Վորոնեժի, Օմսկի ավտոդողերի գործարանների բազմատիրաժ թեր-

թերը և ծանոթանալու նրանց մոտ կիրառվող առաջավոր մեթոդներին։

Ամբողջ կոլեկտիվի լավագույն աշխատանքի շնորհիվ գործարանը ամբողջությամբ վերցրած այս տարվա 9 ամիսների արտադրական պլանը կատարեց համախառն արտադրանքի գծով՝ 103,8 տոկոսով, ինքնարժեքի իջեցման պլանը՝ 6,88 տոկոսով, աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը՝ 17,6 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում արտապլանային կուտակումները կազմել են մոտ 470 հազար ռուբլի, տեղի է ունեցել մեկ միլիոն յոթ հարյուր հազար ռուբլու հումքի և ութ հազար ռուբլու էլեկտրաէներգիայի խնայողություն։

Այս հաջողությունների ապահովման գործում անշուշտ իր դերն է խաղացել լավ կազմակերպված բանավոր և ցուցադրական ագիտացիան։ Եթե մենք աշխատենք այսպիսի ցուցանիշներով, ապա ոչ միայն կկատարենք, այլև զգալիորեն կգերակատարենք սոցմրցմամբ ստանձնած մեր պարտավորությունները։ Մենք, ավտոդողերի գործարանի ագիտատորներս, ամեն կերպ կձգտենք կոլեկտիվի ուշադրությունը բևեռել այդ խնդրի կատարման վրա։

---



# ԻՆՉՊԵՍ ՍՏԱՑԱՆՔ ԾԽԱԽՈՏԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔ

Ա. ՄԵԼԻՔՋԱՆՅԱՆ
Իջևանի շրջանի Աչաջուր գյուղի
կոլտնտեսության օղակավարուհի

Ծխախոտը պատկանում է մեծ խնամք և շատ աշխատանք պահանջող կուլտուրաների թվին։ Այդ խնամքը պետք է սկսվի ծխախոտի սերմը ջերմոցում ցանելու օրվանից և մշտապես շարունակվի մինչև չորացած հումքը պահեստ հանձնելը։

Տասնինը տարի է, ինչ ես ծխախոտագործական օղակի օղակավար եմ և իմ անձնական փորձից ելնելով կարող եմ ասել, որ ջանասեր աշխատանքով միշտ էլ կարելի է ծխախոտի բարձր բերք ստանալ։

Ինչպե՞ս ենք մենք մշակում ծխախոտը և ո՞րն է մեր աշխատանքի փորձը։

Մենք փորձով համոզվել ենք, որ ծխախոտի բարձր բերքի հիմքը դրվում է ջերմոցներում, ուստի ջերմոցային տնտեսությունը մեր օղակի հատուկ հոգատարության առարկան է։

Մեր կոլտնտեսությունը մշակում է «Տրա-

պիզոն» և «Օստրոլիստ» տեսակների ծխախոտ։ Ունենք երեք տեսակի ջերմոցներ՝ տաք, կիսատաք և սառը։ Այս մեզ հնարավորություն է տալիս սածիլները աճեցնել հաջորդականությամբ։ Ջերմոցները պատրաստում ենք հետևյալ կերպ՝ նրանց մեջ նախ լցնում ենք թարմ գոմաղբ՝ 20 սանտիմետր շերտով, հետո 10—15 սանտիմետր անտառի լավ հող և դրա վրայից էլ ավազի, գոմաղբի և խամ հողի խառնուրդի 10 սանտիմետրանոց մի նոր շերտ։ Ավազը խառնում ենք այն նպատակով, որ սածիլը հողից դուրս քաշելիս նրա արմատները հեշտ դուրս գան և չկտրվեն։

Ջերմոցներում սերմեր ցանելն սկսում ենք փետրվար ամսից։ Ժամանակին սածիլները ջրում ենք, քաղհանում և մանր մաղած գոմաղբով սնուցում տալիս։ Մոլախոտը սածիլի թշնամին է, այդ իսկ պատճառով էլ մենք ջերմոցները մշտապես զերծ ենք պահում նրանից, առատ սնունդ ու ջերմություն ապահովելով սածիլների համար։

Առողջ սածիլներ աճեցնելու համար ջերմոցներում մշտապես պետք է լինի անհրաժեշտ աստիճանի ջերմություն, ինչպես նաև թարմ օդ։ Այստեղ արդեն ամեն ինչ կախված է ծխախոտագործի փորձառությունից։



Հմուտ ծխախոտագործը կարողանում է որոշել, թե տվյալ օրվա ընթացքում հարկ կա՞ արդյոք բարձրացնել ջերմոցների շրջանակները, կամ թե որքա՞ն պետք է դրանք բարձրացվեն և այլն։

Աշխատանքի փորձից ելնելով, մենք կարողանում ենք մոտավորապես որոշել, թե օրվա ընթացքում ինչ եղանակ է սպասվում և ըստ այնմ էլ կանոնավորում ենք ջերմոցներում եղած օդային և ջերմային ռեժիմը։

Ծխախոտի պլանտացիաների հողի մշակությունը կատարում է մեքենա-տրակտորային կայանը և մենք նրա աշխատանքից գոհ ենք։ Մեր օղակը միայն մարգեր է քաշում և ապա սկսում սածիլումը։ Սածիլացումն սկսելուց առաջ տալիս ենք առաջին ջուրը և ապա, յուրաքանչյուր մարգ սածիլելուց անմիջապես հետո՝ երկրորդ ջուրը, իսկ երեք օր անց՝ երրորդ ջուրը։ Սածիլացումից 8 օր անց կատարում ենք առաջին փխրեցումը, որից 10—12 օր անց, ըստ պահանջի, կատարում ենք երկրորդ փխրեցումը, այնուհետև՝ երրորդը և ըստ պահանջի՝ չորրորդը։

Դաշտերի պարարտացումը կատարում ենք հետևյալ կերպ՝ սածիլացումից առաջ, նախ քան կրկնավար կատարելը, հողին տալիս ենք հանքային պարարտանյութեր՝ սուպեր-

ֆոսֆատ և կալիական աղ։ Դաշտերի երկրորդ փխրեցման ժամանակ տալիս ենք սնուցում՝ հանքային և տեղական պարարտանյութերով։

Ժամանակին, ծաղիկները երևալուն պես, կատարում ենք երկու ծաղկատում, հետո էլ երկու անգամ բչատում։

Տերևաքաղը կատարում ենք հետևյալ կերպ՝ առաջին քաղին ամեն մի բույսից վերցնում ենք 3—4 տերև, երկրորդ քաղին՝ 5—6 տերև, իսկ 3-րդ և 4-րդ քաղերին՝ 7—8 տերև։ Ապա արդեն կատարում ենք վերջնաքաղը։

Ահա այսպես ենք մենք մշակում ծխախոտի բույսը նրա վեգետացիայի ամբողջ ընթացքում և այդ մշակությամբ ամեն տարի բարձր բերք ենք ստանում։ Անցած տարի, օրինակ, մեր օղակը իր մշակած 6,25 հեկտար ցանքերի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 23 ցենտներ լավորակ ծխախոտ, պլանով տրված 10,5 ցենտների փոխարեն։ Այս տարի, չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, մենք յուրաքանչյուր հեկտարից կտանք 24—26 ցենտներից ոչ պակաս ծխախոտի հումք։

Ինձ կարող են ասել, թե մեր օղակը ոչ մի նոր բան չի մտցրել ծխախոտի մշակության



մեջ, թե այն ամենը, ինչ որ ես ասացի, հայտնի են բոլորին և յուրաքանչյուր ծխախոտագործ կարող է դրանք կիրառել։ Դա ճիշտ է, մեր օղակը միայն ճշտորեն կիրառում է ծխախոտի մշակության ագրոկանոնները սահմանված ժամկետում, ելնելով տեղական կոնկրետ պայմաններից. ճիշտ է նաև, որ այդ ագրոկանոններն ի վիճակի են կիրառելու ծխախոտագործական բոլոր օղակները։ Բայց բանը հենց նրանումն է, որ շատ օղակներ թերանում են իրենց պարտականությունների կատարման մեջ, խախտում են ագրոկանոնները, որի հետևանքով էլ ցանկացած բերքը չեն կարողանում ստանալ։

Ասածս կարող եմ հաստատել հենց մեր կոլտնտեսությունից վերցրած օրինակներով։ Կոլտնտեսության առաջին բրիգադայի առաջին և երկրորդ օղակների ու մեր օղակի աշխատանքի պայմանները նույնն են. սակայն առաջին օղակն անցյալ տարի, պլանով նախատեսված 93 ցենտների փոխարեն, պետությանը հանձնեց 86 ցենտներ հումք, իսկ երկրորդ օղակը պլանից պակաս հանձնեց 17 ցենտներ ծխախոտ։ Ի՞նչն էր պատճառը։ Պատճառն այն էր, որ այդ օղակները լրիվ չափով չէին կիրառում ծխախոտի մշակության ագրոկանոնները։ Այն ժամանակ, երբ

մեր օղակի ջերմոցներում աճում էին առողջ սածիլներ, նրանց ջերմոցներում բույսերին կամ օդը չէր հերիքում, կամ ջերմությունը և կամ էլ մոլախոտերն էին խլում նրանց սնունդը։ Մենք մեր դաշտերում չենք հանդուրժում ոչ մի մոլախոտ, իսկ այդ օղակների ցանքերում երբեմն ծխախոտի բույսերից ավելի շատ մոլախոտ էր լինում։

Եվ, վերջապես, բերքահավաքի ամբողջ ժամանակաշրջանում մեր օղակի բոլոր 13 անդամներն էլ ամեն օր մեկ մարդու պես դաշտ են դուրս գալիս և խնամքով հավաքում իրենց աճեցրած բերքը։

Ահա մեր կարծիքով ծխախոտի բարձր և ցածր բերք ստանալու ամբողջ «գաղտնիքը»։

Ինչ խոսք, որ լավ, նվիրված աշխատանքը մեզ բերում է և լավ եկամուտ և փառք ու պատիվ։ Ծխախոտի բարձր բերք աճեցնելու համար ես անցյալ տարի, որպես Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակից մեկնեցի Մոսկվա։ Այս տարի նույնպես այդ ցուցահանդեսի մասնակիցն եմ և մի քանի օրից հետո նորից Մոսկվա կմեկնեմ։

Անցյալ տարի մեր օղակը որպես պարգև հավելում ստացավ մոտ 22 հազար ռուբլի։ Մեծ եկամուտներ կստանանք նաև այս տարի։

---

ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ

## ԽԱՂՈՂԱԳՈՐԾԱԿԱՆ ՎՈՒՄ-60 ՈՒՆԻՎԵՐՍԱԼ ՄԵՔԵՆԱՆ

Վերջին տարիներս մեր երկրի խաղողագործական տնտեսությունները ստացան բազմաթիվ նոր մեքենաներ, այդ թվում՝ այգեգործական ՎՈՒՄ—60 ունիվերսալ մեքենան (նրա թողարկումն սկսվեց 1950 թվականին)։ Այդ մեքենան նախատեսված է 2—2,5 մետր միջշարքային տարածություն ունեցող խաղողի այգիների մշակության կոմպլեքսային աշխատանքների համար։ Մեքենան շարժման մեջ է դրվում ԿԴ—35 կամ ԴՏ—54 տրակտորով։

Խաղողի մատեր (շիվեր) տնկելու ժամանակ ամենաաշխատատար պրոցեսներից մեկը փոս փորելն է։ ՎՈՒՄ—60 մեքենան հաջողությամբ օգտագործվում է ակոսներ հանելու համար, որոնց մեջ տնկվում են մատերը։ Միայն այդ պրոցեսի կատարումով՝ ՎՈՒՄ—60 մեքենան յուրաքանչյուր հեկտարի վրա փոխարինում է 60—100 մարդու։

Տնկարանից բուսակները ձեռքով հանելու ժամանակ մեկ հեկտարի վրա ծախսվում է 140—150 մարդ-օր։ Բացի դրանից, ձեռքով հանվող բուսակների արմատները վնասվածք են ստանում։ ՎՈՒՄ—60 մեքենան ունի հատուկ հարմարանք՝ տնկանյութը արմատով հանելու համար։ Նրա դանակը արմատային սիստեմը և հողը կտրում է երեք կողմից՝ աջից, ներքևից և ձախից։ Դրանից հետո բուսակները ձեռքով քաշելիս, հեշտությամբ դուրս են գալիս հողից։

ԿԴ—35 տրակտորով աշխատող ՎՈՒՄ—60 մեքենան օրական հանում է մեկ ու կեսից մինչև երկու հեկտարի բուսակ։ Ընդ որում՝ բուսակների որակը ավելի բարձր է լինում, քան ձեռքով հանելու դեպքում։

Խաղողի այգու պլանտաժային շերտը ժամանակի ընթացքում պնդանում է, որի հետևանքով դժվարություններ են ստեղծվում, խաղողի վազի զարգացման և բարձր բերք ստանալու համար։ Ուստի անհրաժեշտ է 4—5 տարին մեկ անգամ նորացնել պլանտաժային շերտը և միաժամանակ պարարտանյութ մտցնել հողի խոր շերտերում։ Այդ աշխատանքը նույնպես հաջողությամբ կատարում է ՎՈՒՄ—60 մեքենան։ Դրա համար մեքենայի վրա տեղակայում են հա-



տուկ բանող օրգաններ, այն է՝ հիմնական փխրեցուցիչ, որը դրվում է շրջանակի կենտրոնում, կողքերին ամրացվող փխրեցուցիչներ և հողի մեջ պարարտանյութ մտցնող սարք։

ՎՈՒՄ—60 մեքենան հաջողությամբ կարելի է օգտագործել նաև այգեթաղի համար։ Այդ նպատակով մեքենայի վրա ամրացնում են ծածկող կորպուսներ և միջշարքային տարածությունները վարող կորպուսներ։ Շարքերի միջով անցնելու ժամանակ ծածկող կորպուսները հողով երկու կողմից ծածկում են նախօրոք հավաքված խաղողի մատերը։ Մեքենան անցնելուց հետո պետք է ստուգել և որտեղ անհրաժեշտ է լրացուցիչ ծածկել ձեռքով։ ՎՈՒՄ—60 մեքենայի օգնությամբ օրական կարելի է թաղել 4—5 հեկտար խաղողի այգի։

Գարնանը կատարվում է այգիների բացումը։ ՎՈՒՄ—60 մեքենան այգեբացը կատարում է կիսով չափ, վազերի վրայի հողը շուռ տալով միջշարքերը։ Խաղողի այգիների կիսաբացման հետ միաժամանակ մեքենան հողը հերկում է՝ 15—18 սանտիմետր խորությամբ։

Այգեգործական ՎՈՒՄ—60 ունիվերսալ մեքենայի հերթափոխային բանող օրգան-

ների կազմում կան նաև կուլտիվատորներ և հող փխրեցնող թաթեր, որոնք տեղադրըվում են մեքենայի վրա միջշարքային այս կամ այն մշակության ժամանակ։ Այդ թաթերի օգնությամբ կատարվում է միջշարքերի համատարած խոր փխրեցում՝ մինչև 30 սանտիմետր խորությամբ կամ կուլտիվացիա՝ 6—12 սանտիմետր խորությամբ։

ՎՈԽՄ—60 մեքենան կարելի է օգտագործել նաև պտղատու այգիների մշակության աշխատանքներում։

ՎՈԽՄ—60 մեքենայի ունիվերսալությունը հնարավորություն է տալիս այն արդյունավետ կերպով օգտագործելու դաշտային աշխատանքների ամբողջ սեզոնի ընթացքում։

## ՀԱՑԱՀԱՏԻԿ ՁՏՈՂ ԱԳՐԵԳԱՏ

Այս նոր մեքենան կարող է հացահատիկը տեսակավորել. կշռել և բեռնել ավտոմեքենաները կամ վագոնները։ Նա ունի 11 կոմպլեկտ հերթափոխային մաղեր, որոնք հնարավորություն են տալիս տեսակավորելու տարեկանը, ցորենը, վարսակը, կորեկը, սիսեռը և այլ կուլտուրաներ։ Տասնյակ մարդկանց ձեռքի աշխատանքը փոխարինող այդ ագրեգատի արտադրողականությունը կազմում է ժամում՝ հացահատիկի զտմանը 6 տոննա, բեռնմանը՝ 18 տոննա։ Ագրեգա-



տը ապահովում է տեսակավորման բարձր որակը և կշռի ճշտությունը։ Նա կարող է օգտագործվել կալերում, ընդունման կետերում, էլևատորներում։ Նա ունի բենզինի շարժիչ։ Կարող է աշխատել տրակտորի և էլեկտրամոտորի միջոցով։

## ՀՈՂ ՊԱՐԱՐՏԱՑՆՈՂ ՄԵՔԵՆԱ

Հող պարարտացնող «ՏՈՒՐ—7» մեքենան ունի մեծ տարողությամբ (մոտ 5 տոննա) թափք, որը դրված է պնևմատիկ անիվների վրա և կցվում է հզոր տրակտորներին։ Թափքի հատակը իրենից ներկայացնում է մի տրանսպորտյոր։ Նրա հետ միասին տեղաշարժվում է հետևի բացվող կողմը, որտեղից պարարտանյութը լցվում է թմբուկի վրա, իսկ այդտեղից՝ երկու ուղղահայաց սկավառակի վրա, որոնք պարարտանյութը ցրում են դաշտում մինչև 10 մետր լայնությամբ շերտով։ Մեքենայի տրանսպորտյորն աշխատում է տարբեր արագությամբ։ Նա կարող է շարժվել րոպեում 1,5-ից մինչև 50 մետր արագությամբ, կարող է համապատասխանորեն փոխել մեկ հեկտարին տրվող պարարտանյութի քանակը՝ մի քանի կիլոգրամից մինչև տասնյակ տոննաներ։

---

## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

ՄՈՆՈՊՈԼԻԱ— Դա հունական բառ է, որը բառացիորեն նշանակում է «միակ» և «վաճառում եմ»։ Հետագայում այն սկսեցին կիրառել ավելի լայն իմաստով, որը արտահայտում էր մի ինչ որ բանի նկատմամբ (արտադրության, առևտրի, հանույթի, տիրապետման և այլն) մեկին, որոշակի խմբին կամ պետությանը պատկանող բացառիկ իրավունք։

ՍՍՌՄ-ում իրականացվում է արտաքին առևտրի մոնոպոլիա։ Այդ կարգը սահմանվել է Սովետական կառավարության 1918 թվականի ապրիլի 22-ի Դեկրետով, որը ստորագրել է Վ. Ի. Լենինը։ Այդ ժամանակից ի վեր օտարերկրյա պետությունների և առևտրական ձեռնարկությունների հետ առևտրական գործարքներ Սովետական կառավարության անունից կատարում են այդ բանի համար լիազորված օրգանները։

Արտաքին առևտրի մոնոպոլիան կայանում է նրանում, որ սովետական պետությունը ելնելով մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման շահերից, արտահանման-ներմուծման պլանի միջոցով սահմանում է ՍՍՌՄ ներմուծվող և նրանից արտահանվող ապրանքների ցուցակը և քանակը։



ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 14-րդ հոդվածի համաձայն պետական մոնոպոլիայի հիման վրա արտաքին առևտուրը ենթակա է ՍՍՌՄ-ի պետական կառավարման օրգանների տնօրինությանը։ Արտաքին առևտրի մոնոպոլիան ապահովում է մեր երկրի տնտեսական անկախությունը։ ՍՍՌՄ արտաքին առևտուրը հանդիսանում է սոցիալիստական պետության և նրա արտաքին քաղաքականության անքակտելի մասը և իրականացվում է ՍՍՌՄ արտաքին առևտրի մինիստրության միջոցով։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում և Ժողովրդական Դեմոկրատիայի մյուս երկրներում նույնպես մտցված է արտաքին առևտրի մոնոպոլիա։

Միանգամայն այլ նպատակների են ծառայում կապիտալիստական մոնոպոլիաները։ Նրանք կոչված են ավելացնելու մի բուռ խոշոր կապիտալիստների հարստությունները միլիոնավոր մարդկանց թալանչիական շահագործման միջոցով։

19-րդ դարի վերջին և 20-րդ դարի սկզբին առավել զարգացած կապիտալիստական երկրների արդյունաբերության կարևորագույն ճյուղերում գլխավոր դեր սկսեցին խաղալ խոշոր և խոշորագույն ձեռնարկությունները։

Կապիտալիստական մոնոպոլիաները՝ դա կապիտալիստների հզոր միավորումներ են, որոնք իրենց ձեռքում են կենտրոնացնում որևէ ապրանքի արտադրությունը կամ վաճառքը (կամ և՛ մեկը և

մյուսը), որպեսզի ավելի շահույթներ ստանալու նպատակով իրենց տիրապետությունը հաստատեն տնտեսության այս կամ այն ճյուղերում։

Խոշորագույն մոնոպոլիաները միավորում են շատ երկրների կապիտալիստների, որոնք միմյանց մեջ բաժանում են ամբողջ կապիտալիստական աշխարհի վաճառահանման շուկաները և հումքի աղբյուրները։

Նրանցից ամեն մեկը ապրանքների վրա բարձր գներ սահմանելով, թալանում է միլիոնավոր մարդկանց։ Յուրաքանչյուր կապիտալիստական երկրի մոնոպոլիստական կապիտալը ըստ էության վերահսկում և ուղղություն է տալիս իր պետության ամբողջ ներքին ու արտաքին քաղաքականությանը։ Կապիտալիստական մոնոպոլիաները քաղաքականության մեջ ռեակցիոն դեր են խաղում։ Նրանք հանդես են գալիս խաղաղության և դեմոկրատիայի դեմ, ժողովուրդների մեջ առաջացնում են արհեստական սարսափ և անվստահություն, հրահրում են ագրեսիվ, զավթողական պատերազմներ։

Կապիտալիստների մոնոպոլիստական միությունները լինում են զանազան ձևի։ Առավել տարածված ձևերից են հետևյալները.

ԿԱՐՏԵԼՆԵՐ— Դա արտադրության որևէ ճյուղի խոշոր կապիտալիստական ձեռնարկությունների միություն է։ Կարտելներն առաջացել են արտադրության համակենտրոնացման և կապիտալի կենտրոնացման շնորհիվ։ Կարտելները համաձայնության են գալիս



վաճառահանման պայմանների, վճարման ժամկետների մասին, միմյանց միջև բաժանում են վաճառահանման շրջանները, որոշում արտադրվող ապրանքների քանակը, սահմանում գները, առանձին ձեռնարկությունների միջև բաժանում շահույթը և այլն։

Շատ կարտելներ ըստ իրենց գործունեության մասշտաբի կրում են միջազգային բնույթ։ Կարտելների գերիշխանությունը նշանակում է ժողովրդական մասսաների շահագործման մեծ ուժեղացում։

---

## СОДЕРЖАНИЕ



---

**Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ**

**ԲԱՑՎԱԾ Է**

**«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի**

**1957 թվականի**

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ**

*Բաժանորդագրությունն ընդունվում է կապի գրասենյակների և «Սոյուզպեչատ»-ի բոլոր բաժանմունքներում։ Լույս է տեսնում ամսեկան 2 անգամ, 12 ամիսը—12 ռուբլի, մեկ համարը—50 կոպեկ։*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*

---

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 21 1956 г.**

ՎՖ 06949 Պատվեր 878 Տիրաժ 8300

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։